## Մահափորձ պոլշեւիկ պաշտօնեայի մը դէմ

Առջի օր կէսօրէն վերջ ժամը 6.15ին Վարշաւայի խորհրդային դեսպանատան պնդամիներէն Լիզարեֆ ինքնաշարժով կ'անցնէր Մարշալ-կովսկա փողոցէն, երբ երիտասարդ ռուս տարագիր մը ատրճանակի երկու գնդակ պարպեց անոր վրայ։ Գնդակները քսուելով անցան Լիզարեֆի վրայէն. բոլշեւիկեան պաշտօնեան թեթեւօրէն վիրաւորուեցաւ նաեւ խորտակուած ապակիի կտորներէն։ Ինքնաշարժին մէջ իրեն հետ էր դեսպանատան ուրիշ մէկ անդամը։

Ձերբակալուեցաւ ահաբեկիչը, Վոյսիշովսկի, 24 տարեկան, որ իբրեւ ուսանող արձանագրուած է Վարշաւայի քաղաքական գիտութեանց վարժարանը։

## Հինգհարիւր հոգի դատի տակ

Մոսկուայէն կը հեռագրեն թէ վերջացած է Դոնէցի աւազանին դաւադրական գործին քննութիւնը։ Ամբաստանեալներուն թիւը կը հասնի 500ի։ Դատավարութիւնը պիտի սկսի շաբաթ մը վերջ։ Ամբաստանագիրէն օրինակներ ղրկուեցան բոլոր ամբաստանեալներուն։

## Աւարին վաճառումը կը շարունակուի

Ռիկայէն կը հեռագրեն Մայիս 4 թուականով.—

Խորհրդային կառավարութեան կողմէ հոս հասաւ պաշտօնեայ մը, որ օտար գնողներու հետ պիտի բանակցի ռուս ցարական գոհարեղէններու եւ ուրիշ գեղարուեստական առարկաներու վաճառումին համար։ Բոլշեւիկները կը յուսան մէկ միլիոն ոսկի ձեռք բերել այս կերպով։

## Եգիպտոս եւ Անգլիոյ ընկերվարականները

Անգլիոյ Աշխատաւորականները, Մաքտոնըլտի նախագահութեամբ նիստ գումարելով, որոշեցին հրատարակել զեկոյց մը, որուն մէջ կ'ըսուի.

Աշխատաւորական կուսակցութիւնը գոհունակութեամբ կը նկատէ որ եգիպտական և անգլ. կառավարութեանց միջեւ վէճերը առժամաբար մեղմացած են՝ սակայն դեռ բոլորովին չեն կարգադրուած, որովհետեւ քանի կը պահուին ներկայ գոյավիճակը եւ չորս վերապահումները, վէճը կրկին կրնայ արծարծուիլ։ Կուսակցութիւնը ուժգնօրէն կը դատապարտէ անգլ. կառավարութեան վերջնագրի եւ զինեալ ուժով սպառնալիքի քաղաքականութիւնը, որ բոլորովին անհամապատասխան է կացութեան եւ թշնամական զգացումներ կ'արթնցնէ եգիպտական ժողովուրդին մէջ։ Կուսակցութեան տեսակէտն այն է որ անգլիական կառավարութիւնը կրնէ 1922ի Յայտարարութեան մէջի ապահովութիւնները, իսկ վերապահուած չորս կէտերուն մասին ազատ բանակցութեամբ կարգադրութեան մը յանգի։ Պէտք է համաձայնութիւն մը կնքել Եգիպտոսի հետ, որ կամիլի եղածին չափ շուտ անդամ դառնալու է Ազգերու Դաշնակցութեան, երբ միջազգային եւ անխոցելի հիմերու վրայ դրուի ապահովութիւնը կայսերական հաղորդակցութեանց ճամբաներուն, որոնց էական մէկ մասը կը կազմէ Սուէզի ջրանցքը։

## Օդանաւային նոր արշաւներ

Զօրավար Նոպիլէի ղեկավարութեամբ «Իտալիա» ղեկաւոր օդապարիկը, որ կ'ուղղուի դէպի հիւսիսային բեւեռ, հասաւ Վատոսէ, օդային մեծ դժուարութիւններու յաղթելէ վերջ։ Ցամաք իջած ատեն ղեկաւորը վնասուեցաւ։ Նորոգութիւնը քանի մը օր պիտի տեւէ։ Անկէ զատ Նորվեկիոյ հիւսիսային եզերքին վրայ սաստիկ փոթորիկ կայ։

⁂ Ամերիկացի օդանաւորդ Քլարէնս Չէմպըլին, որ անցած տարի Լէվինի հետ միասին կտրած էր Ատլանտեանը՝ Նիւ Եորքէն Գերմանիա, ծրագրած է տարուոյս վերջերը Ամերիկայէն Ճափոն երթալ՝ մէկ թռիչքով եւ առանձին։

⁂ Անգլիացի օդանաւորդ հարիւրապետ Քինկսֆորտ Սմիթ Մայիս 29ին պիտի կտրէ Խաղաղականը՝ Սան Ֆրանչիսկոյէն Մէլպուրն (Աւստրալիա)։ Սմիթ կը յուսայ 6 օրէն կտրել 9500 մղոնի այս երկար ճամբան։

⁂ Ուրիշ անգլիացի օդանաւորդ մը՝ հարիւրապետ Քըրթնի Յայիսի մէջ Անգլիայէն Նիւ Եորք պիտի երթայ մէկ թռիչքով, իտալական օդանաւի մը վրայ, որ շինուած է Փիզա։

## Անատօլուի յիշատակարանները

Փարիզի Գեղեցիկ Դպրութեանց Ակադեմիային առջի օրուան նիստին մէջ Ռընէ Տիւսօ հաղորդեց թէ Թուրք կառավարութիւնը միջոցներ ձեռք առած է Անատօլուի իսլամական հնութիւնները պահպանելու համար։

Մինչեւ հիմա այդ յիշատակարանները երեսի վրայ թողուած էին եւ անոնցմէ շատեր այսօր խղճալի վիճակ ունին։ Թուրք բարձրաստիճան պաշտօնատարներէ բաղկացած մարմին մը՝ Սթրազպուրկի համալսարանին փրոֆէսէօր Գաբրիէլի ղեկավարութեամբ պիտի այցելէ Անատօլուի գեղարուեստական կեդրոնները, պիտի դասաւորէ հնութիւնները եւ միջոցներ ձեռք պիտի առնէ անոնց պահպանութեան համար։

Յիշեալ մարմինը արդէն հետազօտութիւններ կը կատարէ՝ Կապադովկիոյ եւ Պոնտոսի մէջ՝ սկսելով Էնկիւրիէն, Կեսարիայէն եւ Սվազէն։

### ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ՄԱՆՇԻ մէջ ընկղմեցաւ յունական «Եօաննիս-Թաֆիլիաս» շոգենաւը՝ բախելով անգլիական «Բազոս» նաւին։ Քանի մը անգլ. նաւաստիներ օգնութեան փութացին եւ փրկեցին 22 նաւաստիներէն 11ը. մնացեալ 11ը խեղդուեցան։

ՄՈՍԿՈՒԱՅԻ մեծ Օփերային մէջ ներկայացումէ մը յետոյ եւ կու աղջիկներ վերնայարկէն վար նետուելով անձնասպան եղան։

ՌՈՒՄԱՆԻՈՅ ազգային գիւղացի կուսակցութեան համագումարը տեղի պիտի ունենայ այսօր Ալպա-Ժուլիայի մէջ։ Ժողովէն վերջ մեծ թափօր մը պիտի պտտի քաղաքին մէջ։ Ամէն միջոց ձեռք առնուած է խաղաղութիւնը չվրդովելու համար։

ԹՈՒՐՔԵՐԸ կը պատրաստուին փառաւոր ընդունելութիւն մը ընել Աֆղանիստանի թագաւորին, որ Պոլիս պիտի հասնի Մայիս 15ին։ Սէյրը Սէֆային «Իզմիր» շոգենաւը բարեզարդուելէ վերջ Օտեսա պիտի երթայ՝ արքայական հիւրերը փոխադրելու համար։

«ԺՈՒՌՆԱԼ» կը գրէ թէ Թուրք կառավարութիւնը ընդունած է լատինական տառերը։ Այս լուրը չէ հաստատուած ուրիշ աղբիւրէ եւ կանխահաս կը թուի։

ՆԱՓՈԼԷՈՆ Պոնափարթի մահուան 107րդ տարեդարձին առթիւ երէկ հոգեհանգստեան պաշտօն կատարուեցաւ Սէն'թ-Օկիւսթէն եկեղեցիին մէջ։





### Հ. Յ. Դ.

Ալֆորվիլ, Սարգիս Մինասեան խումբի ժողովը այսօր կիր. ժամը 2.30ին, 72 Etienne Dolet։ Ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

Լիոնի Կայծակ խումբի ժողովը՝ այս Չորեքշաբթի երեկոյ ժամը 8.30ին։ Կարեւոր Օրակարգ։

### ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՍԱՆԱՍԱՐԵԱՆԻ դասընթացքը այս առաւօտ Ֆլորիայի մէջ, ժամը 10.30—12 ֆրանսերէն (Դաւիթ Բէգ։

Կէսօրէ վերջ ժամը 3—6 ընդհ. ժողով Սանասարեան միութեան, Ֆլորիայի վերնայարկը։

8 Մայիս Երեքշաբթի իրիկուն Ֆլորիայի մէջ ժամը 9—10 Անգլիոյ պատմութիւն (Նալթանեան։

10 — 11 Տնտեսագիտութիւն (Տէրպէտէրեան)։

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այսօր կիր. առաւօտ, Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ, յետ պատարագի հոգեհանգիստ պիտի կատարուի ի յիշատակ Պ. Երուանդ Գազազեանի վաղամեռիկ տիկնոջ՝ ԳՈՀԱՐԻԿ ԳԱԶԱԶԵԱՆԻ, (մահուան երրորդ տարելիցին առթիւ) ինչպէս նաեւ համայն գազազեան եւ կարմիրեան գերդաստաններու ննջեցելոց։




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant: H. TEURNIER

# ԵՐԿՐԱՇԱՐԺԻ ԶՈՀԵՐՈՒՆ ՀԱՄԱՐ

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻՆ ԿՈՉԸ

...նորակազմ եւրոպաճիայ կարմիր խաչը, որուն կեդրոնը կը գտնուի Մարսէյլ, ճետեւեալ կոչը ուղղած է իր մասնաճիւղերուն.— ...Կարմիր Խաչի Երրոպահայ կեդր. Վարչութիւնն ...

...հոծ բազմութիւն մը լեցուած էր սրահը, այնպէս որ շատեր ոտքի վրայ մնացին, իսկ ուրիշներ ալ ստիպուեցան ետ դառնալ:

Նախագահ Պ. Վ. Շէհրէրեան քանի մը խօսքերով բացաւ հանդէսը: Խմբերգէ մը յետոյ եղան արտասանութիւններ եւ մեներգներ Կարմիր Խաչի ընկերուհիներու կողմէ, նաեւ անակնկալներ որոնց մասնակցեցան ներկաներէն շատերը. իսկապէս գնահատելի է Կար. Խաչի առաջին ձեռնարկը, որ ստեղծեց տաքուկ մթնոլորտ մը: Այս առթիւ խօսեցան՝ դերասան Մարութեան եւ Ե. Թէրզեան որոնք մանրամասն բացատրեցին Կարմիր Խաչի դերն ու նպատակը:

Ներկաները հիւրասիրուեցան թէյով, անուշեղէններով ու նարինջներով: Ներկաներէն մէկը ...

...

## ԱԼՋԱՍ ԼՈՐԵՆԻ

### ԻՆՔՆԱՎԱՐՈՒԹԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵՆԵՐՈՒ ԴԷՄ

...

վրայ ծանրացող մեղադրանքին դէմ չոր փաստեր տալով:

Խօսքը ուրեմն դարձեալ ամբաստանեալներունն է: Բոլորը կը դժեն դաւադրութեան մը ...

...

1920 Ապրիլ 20ին, այս թռուցիկներէն մէկը կը յորդորէր ժողովուրդը որ չի խրտչի նոյնիսկ սուիններէն, եւ ընդհ. գործադուլի հրահանգ կուտար:

— 1920էն սկսեալ, կը շարունակէ Պաուէր, Հաէկի, Փասհաուզէր եւ Ռոսսէ հակաֆրանսական նոր ձեռնարկներ կը կատարեն: 1922ին Հաննաք անուն վարդապետ մը հակաֆրանսական ճառեր կ'արտասանէր: Մարի Հոնէկկէր անուն գերման կին մը, անոր կը ծառայէր իբր գրագրուհի:

Այդ միջոցին է որ երեւան կ'ելլէ Փինք, գերման գործակալ մը, որ ուժ կ'ուտայ անջատողական շարժումին:

Դատավարութեան պահ մը դադար կը տրուի եւ դատարանը պէտք տեսաւ նշանակելու լիազոր մը, որ քննէ Փինքի գանազան դրամատուններու մէջ ունեցած հա...

...

մէջ գոյութիւն ունեցած են:

Սթրազպուրկի ոստիկանապետը իր յայտնութիւնները չէ վերջացուցած, բայց դատաւորը կը յայտարարէ նիստը փակուած:

## ԹԱՏՐՈՆ

կը խնդրուի մեզմէ յայտարարել թէ Շաբաթ, Մայիս 26ին կովկասեան պետական թատրոնի դերասաններ Տիկին Դուբեան-Արմէնեան, Աստղիկ եւ Լեւոն Երամեան նախքան Հայաստան մեկնիլը կուտան իրենց հրաժեշտի ներկայացումը: Պիտի բեմադրէ տաղանդաւոր Թատերագիր Գ. Սունդուկեանի ծննդեան հարիւրամեակին առթիւ, առաջին անգամ ըլլալով արտասանիմանի մէջ «Պէպօ»ն պիտի ներկայացուի ճարազատ բարբառով:

## ՁԱՅՆԵՐ ԳԱՒԱՌԷՆ

### ԿԵԱՆՔԸ ՓՈՆ ՍԷՆ-Թ'ԷՍՓՐԻԻ ՄԷՋ

ՓՈՆ ՍԷՆ-Թ'ԷՍՓՐԻ, 6 Մայիս.— Այս գիւղը կը գտնուի Կառ նահանգին մէջ եւ ունի երկու գործարան, մէկը՝ շիշի, իսկ միւսը սալայատակի համար գոյնզգոյն քար պատրաստող. այս վերջինին մէջն է որ կ'աշխատին գրեթէ բոլոր Հայերը: 23—25 տնուոր այս գաղութը 70—80 հոգի կը համրէ, որ մեծ մասով Սեբաստիոյ գաւառացիներ են:

Գործարանատէր Պ. Վիժիէ շատ ազնիւ մարդ մըն է, տեղեակ՝ հայկական դատի անցեալին եւ ամբողջ պատմութեան: Իր քրոջ ամուսինն ալ Տօքթ. Նանսէնի ինքնաշարժին վարիչն է եղած, բեւեռախոյզին Հայաստան պտտած ժամանակ եւ ամբողջ հայկական բարքերը ուսումնասիրած էին:

...

ման յորդոր կարդալու եւ մանկապարտէզներ բանալու ձեռնարկներ ընել որպէս զի իրենց մատղաշ սերունդը չայլասերի: Այս ամբողջ հոգերէն յետոյ, աՀա Փիլիպէի, մեր եղբայրներու օգնութեան աղաղակը: Խուլ եւ համր են մեր պարոնները:

Մե՛ղք այս գաղութին:

Աւետիս Շիրոյեան

## ՄԱՐԶԱԿԱՆ ԿԵԱՆՔ

Սէվրանի նորակազմ «Արաքս» ֆութպոլի խումբը իր առաջին մրցումը կատարեց կիրակի օր, U. S. Sévranի երկրորդ խումբին դէմ:

Հակառակ անոր որ մեր խաղցողները սկսնակներ էին «Արաքս» տարաւ փայլուն յաղթանակ մը 1ի դէմ 4:

Ա. Պատէմեան

## ՕՐՈՒԱՆ ԴԷՊՔԵՐԸ

ԱՅՐ ՈՒ ԿԻՆ ԵՒ ՍԻՐԱՀԱՐ.— Երէկ առտու, Լուի Վալէ՝ 35 տարու կը ներկայանար կուի-լըքոնթի ոստիկանատունը եւ կը յայտնէր թէ սպաննած է իր կնոջ սիրահարը: Բացուած քննութիւնը հաստատեց սակայն թէ մարդը կը ստէր. իր կինն էր որ սպաննած էր իր սիրահարը: Տիկին Վալէ երեք ամիս առաջ ծանօթացած էր իր սիրահարին՝ Տէմարէի որուն հետ փախած էր: Յետոյ սակայն, վերադարձած էր իր ամուսնին քով: Այր ու՝ կին, իրենց առօրեայ կռիւներու ընթացքին, որոշեցին վերջապէս, ժամադրութիւն մը ուղել Տէմարէէն, անկէ պահանջելու համար 3000 ֆր. զոր տիկին Վալէ գողցած էր ամուսինէն, սիրահարին հետ փախած պահուն:

...

ներուն ուշադրութիւնը գրպեց, 7 դիակները հաւաքուած էին խոհանոցին մէջ: Ուշադիր քննութիւն մը ցոյց տուաւ որ անոնք հրդեհէն առաջ արդէն սպաննուած էին: բոլորին քունքին վրայ, ատրճանակի փամփուշտի նշաններ կային: Ընտանիքէն ողջ մնացած էր միայն 17 տարեկան տղան, որ այն գիշերը, հրդեհէն յետոյ, երբ սինեմայէն... վերադարձաւ, ձերբակալուեցաւ: Ստահակը խոստովանեցաւ թէ իր ընտանիքին բոլոր անդամները սպաննելէ, հօրը գրպանէն դրամը առնելէ յետոյ, դիակները հաւաքեր էր խոհանոց, անոնց վրայ պարպեց թիթեղ մը քարիւղ. կրակը տուաւ ու գնաց սինեմա...:

---

«ՅԱՌԱՋ»Ի ՊԱՏՈՒԱԾՆԵՐԸ

# ԱՂՔԱՏՆԵՐԸ

## — ԱՏՈՂՆԵՐ, ՍԻՐՈՂՆԵՐ —

Հարցուց թէ ի՞նչ է եղեր այդ ...թամ կիներուն, որ առանց ...ուած ըլլալու եկեր են բան... մը, իր ցաւերուն մէջ, ... պէս բերանաբաց ձգելու: ... գաղտուկ մը զարկաւ անոր ...ղանին տակէն ցոյց տուաւ ...

մուխ ու ծուխին մէջէն: Բայց ծեր ներկարարը իր այծի մօրուքով, ծիծաղելէն նայեցաւ իրեն եւ խօսքը բերնէն առաւ:

«Ես գիտեմ,—ան օրէն ի վեր որ հարուստի մը փախչիլը տեսայ, երբ ան նկատած էր բանուորուհիի ...

...

Թարգ. Պ. Ֆրունեան

(6) (Շար.)

Նակցութիւններ պիտի կատարուին՝ վերջնական համաձայնութիւն մը կնքելու համար։

## Կացութիւնը Ռումանիոյ մէջ

«Շիքակօ Թրիպիւն»ի Պուքրէշի թղթակիցը կը հեռագրէ թէ խիստ գրաքննութիւն հաստատուած է ամբողջ երկրին մէջ։ Ոստիկանութիւնը ձերբակալած է նաեւ գինքը, — որովհետեւ լրագրած էր թէ գիւղացիները Ալպա-Ժուլիայէն երկու թեւերով կը յառաջանան — եւ կը սպառնայ պատերազմական ատեանին յանձնել։ Նոյն թերթին Պելկրատի թղթակիցը Մաքսիմ Մրզլեաք եւս ռումանական սահմանագլուխին վրայ ձերբակալուած եւ բանտարկուած է։

## Գործադուլ մը Հնդկաստանի մէջ

Կալկաթայէն կը հեռագրեն Մայիս 11 թուականով. — Երկաթուղիի ընկերութիւնները մերժած ըլլալով գոհացում տալ երկաթուղիի հնդիկ գործաւորներու պահանջներուն, մասնաւորաբար չուզելով աւելցնել օրավարձերը, հարիւրաւոր բանթողներ այսօր ըմբոստացան եւ յարձակում գործեցին բազմաթիւ եւրոպացի բարձրաստիճան պաշտօնեաներուն վրայ։

Մօտ երեսուն հոգի վիրաւորուեցան։

Բանթողները յարձակեցան նաեւ հանրակառքերուն վրայ, որոնք դադրեցուցին իրենց երթեւեկը։ Տեղական ոստիկանութիւնը անգլիացի զինուորներու աջակցութեամբ մեծ դժուարութիւն քաշեց՝ կարգը վերահաստատելու համար։ 15 բանթողներ ձերբակալուեցան։

Պոմպէյի իշխանութիւնները ձեռք անցուցած են փաստաթուղթեր, որոնք կը հաստատեն թէ Պոմպէյի եւ Կալկաթայի համայնավարները վերջերս 21,000 ռուփիի նպաստ ստացած են Մոսկուայի Գ. Միջազգայինէն։

⁂ Վերջին տեղեկութիւններու համաձայն, խռովութիւնները կը շարունակուին։ Ցուցարարները գաւազաններով զինուած՝ յարձակեցան ոստիկանական փոխ-տեսուչին վրայ եւ ծեծեցին զայն։ Յետոյ քարերով յարձակեցան ուրիշ ինքնաշարժի մը վրայ, որուն մէջ նստած էր անգլիացի հարիւրապետ մը եւ ատեւտրական մը։ Երկուքն ալ վիրաւորուեցան։

Անցեալ ամիս անգլիացի սպայ մը իր զինուորներուն հրամայած էր կրակ բանալ բանթողներուն վրայ, առանց նախապէս ազդարարելու, ինչպէս սովորութիւն է։ Այս առթիւ Պարականշիի դատարանը մեղադրանքի վճիռ արձակած ըլլալով անգլիացի սպային դէմ, Կալկաթայի ամբողջ շրջանին մէջ բուռն թշնամութիւն սկսած է առհասարակ բոլոր անգլիացի սպաներուն դէմ։ Բանթողերը թափօրներ կազմած կը պտտին փողոցները՝ սպառնալով բոլոր օտարականներուն։ Այս վերջինները կը վախնան փողոց ելլելէ։

## Չինաճափոնեան պատերազմը

Նանքինի ազգայնական կառավարութեան կողմէ զօր. Թան Եէն-Քայ, նախագահ գործավարներու խորհուրդին, Ազգերու Դաշնակցութեան ընդհ. քարտուղար սըր Էրիք Տրըմմընտի ուղղուած հեռագրով մը կը պահանջէ արտակարգ նիստի հրաւիրել Ազգերու Դաշնակցութեան Խորհուրդը՝ նկատի առնելու համար Ճափոնի միջամտութիւնը Շանթունկի նահանգին մէջ։

Ծանուցագիրը կ'աւելցնէ թէ ճափոնցի զինուորները կրակեցին չինացի զինուորներուն վրայ՝ առանց պատճառի, ու սպաննեցին 1000 հոգի։ Ասկէ զատ Ճափոնցիները խուժեցին Ցինան-Ֆուի արտաքին նախարարին գրասենեակը, ձերբակալեցին զայն, ու անոր ականջներն ու քիթը կտրելէ վերջ, տեղն ու տեղը սպաննեցին՝ իր պաշտօնեաներով միասին։ Յետոյ Ճափոնցի զինուորականները ծանուցագիր մը ղրկեցին ազգայնական զինուորներու վերին հրամանատարին՝ անտրամաբանական եւ անկարելի պահանջներ ներկայացնելով եւ պատասխանի համար 12 ժամ միայն միջոց տալով։ Սակայն առանց պատասխանի սպասելու, Ճափոնցիները մեծ տարածութեան վրայ զինուորական գործողութիւններ սկսան դարձեալ։

Եզրակացնելով, Նանքինի կառավարութիւնը կը պահանջէ որ Ազգերու Դաշնակցութեան Խորհուրդը դադրեցնէ կռիւները՝ հրաւիրելով Ճափոնցիները, որ պարպեն Շանթունկը։ Նանքինի կառավարութիւնը կ'ընդունի միջազգային ռեւէ քննութիւն՝ իրաւարարութեամբ կարգադրելու համար խնդիրը։

Թէեւ Նանքինի կառավարութիւնը անդամ է Ազգերու Դաշնակցութեան, սակայն ընդհ. քարտուղարը ծանուցագիրը հեռագրով հաղորդեց Ազգերու Դաշնակցութեան անդամ բոլոր պետութեանց։

## Դոնեցի դատավարութիւնը

«Պերլինէր Թակէպլաթ»ի Մոսկուայի թղթակիցը կը հեռագրէ թէ գերման ճարտարագէտներու դատավարութիւնը պիտի սկսի մօտ օրէն։ Ամբաստանուած են նաեւ բազմաթիւ ֆրանսացի եւ լեհ կարեւոր անձնաւորութիւններ։ Ասոնց մէջ է ֆրանքեւռուս պարտքերու յանձնաժողովին անդամներէն մէկը։ Ասկէ զատ ֆրանսացի եւ լեհ պաշտօնեաներ օգնած են՝ ամբաստանեալները կաշառելու յատկացուած դրամներու փոխադրութեան։

## Ընդհ. մարդահամար Յունաստանի մէջ

Յունաստանի թերթերը կը գրեն թէ Մայիս 15ին ընդհանուր մարդահամար պիտի կատարուի։ Այս առթիւ բոլորին բաժնուած են մասնաւոր հարցարաններ, որոնք պիտի լեցուին յունարէն լեզուով։ Մայիս 16ին մասնաւոր մարմիններ պիտի հաւաքեն հարցարանները։

Ազգային տնտեսութեան նախարարութիւնը այս առթիւ կը հրատարակէ շրջաբերական մը, բացատրելով մարդահամարին նշանակութիւնը եւ թելադրելով ժողովուրդին, որ ամենայն անկեղծութեամբ լրացնէ բաժնուած հարցարանները։

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ԱԼՊԱՆԱԿԱՆ դահլիճը հրաժարեցաւ, ելմտացոյցի վիճաբանութեան ատեն ծագած տարակարծութեանց հետեւանքով։

«ՄԷՃԻՏԻԿ» զրահաւորին նորոգութիւնը աւարտած ըլլալով, զրահաւորը Ոսկեղջիւրէն բաց ծով ելած է փորձեր կատարելու համար։ Կ'ենթադրուի թէ Մէճիտիէի ժամական արագութիւնը 20 մղոնի պիտի հասնի։ Մէճիտիէի կաթսաներն ու թնդանօթները ամբողջովին նորոգուած ըլլալով, զրահաւորը վերստացած է իր նախկին վիճակը։

# Հ. Յ. Դ.

Լիոնի Կուկունեան խումբի դասախօսական ժողովը՝ այս Զորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին, Դրադարանի սրահը։ Կը հրաւիրուին Քրիստափոր խումբի ընկերները։ Կը դասախօսէ՝ Ընկ. Տօքթ. Ե. Խ.։

Լիոնի «Դժոխք» խումբի դասախօսական ժողովը վաղը Երկուշաբթի իրիկուն ժամը 8.30ին, Հ. Յ. Դաշնակցութեան Դրադարանի սրահը։ Կը դասախօսէ՝ Ընկ. Վ. Զիւլլէրեան։ Նիւթ՝ Հ. Յ. Դաշնակցութիւնը որպէս գործօն քաղաք. կուսակցութիւն։ Կը հրաւիրուին ընկերներ, համակիրներ եւ պատանիները։

IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10
Le Gérant: H. TEURNIER





Մոնթէսոնի դերակատարը՝ ԿԱՎՌՈՇ-ԹՈԼԱՅԵԱՆ
Բւիշէ՝ Ֆէպիրս



ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ
Մազական, Ա. Ս.— 300։
Պէլֆօռ, Կ. Հայր. Մ.— 70։
Սէն Սէռնէն, Հ. Ա.— 35։
Վալանս, Վ. Զ.— 35։
Նիս, Տ. Զ.— 140։
Վալանս, Գործ.— 264.10։
Մարսէյլ, Գործ.— 604։

